Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս 2—52—78։*






# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼԵՀԱՍՏԱՆԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

## Ս. ԲԵՐԲԵՐՅԱՆ

*Այժմ մեր մեծ երկրում լայնորեն անցկացվում է լեհ-սովետական բարեկամության միամսյակ։ Այդ միամսյակը է՛լ ավելի է ամրապնդելու Սովետական Միության և Լեհաստանի ժողովուրդների բարեկամությունը։*

*1944 թվականի հունիսի 22-ին Սովետական Միության Զինված Ուժերը և նրա հետ միասին լեհական զորքի զորամասերը հետապնդելով նահանջող գերմանական ֆաշիզմի վանդալային զորքերին, մուտք գործեցին Լեհաստանի տերիտորիան և մարտական հաղթական գործողություններով կարճ ժամանակաշրջանում Լեհաստանը ազատագրեցին օկուպանտների կոշմարային լծից։ Այդ օրվանից հունիսի 22-ը դարձավ լեհ ժողովրդի, ժողովրդական Լեհաստանի վերածնության օրը։*







Լեհ աշխատավոր ժողովուրդը իր վերածնության տասնմեկ տարիների ընթացքում, բանվոր դասակարգի ավանգարդ՝ Լեհական Միացյալ Բանվորական պարտիայի գլխավորությամբ, կատարել է սոցիալական մեծ վերափոխումներ, հետևողականորեն իրականացնում է երկրի սոցիալիստական ինդուստրացումը, հաջողությամբ կառուցում է սոցիալիզմը։ Նոր Լեհաստանի ստեղծման արշալույսից մինչև այժմ, նրա գոյության տասնմեկ տարիների ընթացքում ձեռք բերած պատմական մեծ նվաճումները՝ լեհ ժողովրդի պատմական հողերի ազատագրման ու միավորման, քայքայված տնտեսության արագ վերականգնման ու սոցիալիզմի կառուցման մեծ պլանի հաջող իրականացումը և լեհ ժողովրդի այլ նվաճումները, անմիջականորեն կապված են լեհ-սովետական եղբայրական համագործակցության և Սովետական Միության կողմից Լեհաստանին ցույց տրված անշահախնդիր ու բազմակողմանի օգնության հետ։

Ժողովրդական Լեհաստանը լիկվիդացրեց հին կարգերից մնացած սոցիալական ու տնտեսական անարդարությունները։ Հողային ռեֆորմի միջոցով հողը խլվեց շահագործողներից և ավելի քան 6 միլիոն հեկտար հող



հանձնվեց աշխատավոր գյուղացիությանը, իսկ գործարանները, բնական հարստությունները, բանկերն ու տրանսպորտը ազգայնացվեցին, վերածվելով համաժողովրդական ունեցվածքի։

Մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքի հիման վրա և իմաստուն կերպով բացահայտելով սոցիալիզմի կառուցման վիթխարի պլանի իրականացման հետ կապված լեհ ժողովրդի ստեղծագործական անսպառ ուժերը, հայրենասիրությունն ու աշխատանքային պաթոսը, պատմականորեն կարճ ժամանակաշրջանում Լեհաստանը հասավ աննախընթաց նվաճումների։

Լեհաստանը, որ անցյալում տնտեսապես հետամնաց էր, ներկայումս հանդիսանում է առաջավոր ինդուստրիալ երկիր։ 1954 թվականին, նախապատերազմյան շրջանի համեմատությամբ, արդյունաբերության արտադրանքը աճել է ավելի քան 4 անգամ։ Միայն վեցամյակի տարիներին (1950—1955 թ. թ.) երկրում կառուցվել են ավելի քան 11.000 արդյունաբերական տարբեր օբյեկտներ։ Գործարկված արդյունաբերական ձեռնարկությունների ընդհանուր ծավալը կազմում է ավելի քան 50 միլիոն խորանարդ մետր։ Լեհաստանի պատմության մեջ առա-

չին անգամ երկրի նորակառույց մեքենաշի-
նական գործարանները սկսեցին արտադրել
ավտոմոբիլներ, տրակտորներ, օվկիանոսա-
յին խոշոր նավեր, ածխային կոմբայններ,
հիդրո և ջերմա-տուրբիններ ու գեներատոր-
ներ, գյուղատնտեսական, թեթև ու սննդի
արդյունաբերության համար բազմաթիվ ու
բազմապիսի հաստոցներ ու մեքենաներ։

Լեհաստանում գործարկված յուրաքանչյուր
քիչ թե շատ աչքի ընկնող արդյունաբերական
կարևոր նոր գործարանի կառուցման գործում
ևս դրսևորվել է լեհ-սովետական եղբայրա-
կան համագործակցությունը, Լեհաստանին
Սովետական Միության կողմից ցույց տրված
անշահախնդիր օգնությունը։ Այսպես, օրի-
նակ, Լեհաստանի մետաղաձուլական հին
գործարանների տեխնիկական վերազինման
և ընդարձակման հետ միասին, կառուցվում
են մետալուրգիական նոր գիգանտ կոմբի-
նատներ։ Այդպիսիններից է Կրակով քաղաքի
մոտ նոր կառուցված Նովա Գուտա մետալուր-
գիական կոմբինատը, որի ամբողջ սարքավո-
րումը ստացվել է Սովետական Միությունից։
Այդ կոմբինատը, լրիվ ավարտվելուց հետո,
տարեկան տալու է ավելի շատ արտադրանք,
քան նախապատերազմյան շրջանում տալիս
էին երկրում գործող բոլոր սև մետալուրգիա-



կան գործարանները միասին վերցրած։
Լեհաստանը այժմ տարեկան արդյունա-
հանում է ավելի քան 90 միլիոն տոն-
նա ածուխ, իսկ ածխարդյունաբերության մեջ
հաջողությամբ օգտագործվում է «Դոնբաս»
ածխակոմբայնը, որը ստացվում է ոչ միայն
Սովետական Միությունից, այլև նրա արտա-
դրությունը արդեն յուրացրել է Լեհաստանի
մեքենաշինությունը։ Վարշավայի և Լյուբլինի
ավտոմոբիլային մեքենաշինության, Վարշա-
վայի տրակտորների արտադրության, Կենձե-
ժևի ազոտային պարարտանյութերի կոմբի-
նատի, երկրում կառուցված բազմաթիվ էլեկ-
տրագործարանների կառուցման և նրանց
գործարկման գործում ևս դրսևորվել է լեհ-
սովետական բարեկամությունը, եղբայրա-
կան համագործակցությունը։

Հաջողությամբ զարգանում է Լեհաստանի
գյուղատնտեսությունը։ Գյուղատնտեսության
սոցիալիստական վերակառուցման և աշխա-
տավոր գյուղացիական տնտեսությունները
գյուղատնտեսական արտադրական կոոպե-
րացիայի մեջ համախմբելու հաջող սկսված
աշխատանքների հետ միասին, ամբողջ գյու-
ղատնտեսությունը աստիճանաբար խարսխը-
վում է գյուղատնտեսական ժամանակակից
կատարելագործված մեքենաների օգտագործ-

ման բազայի վրա։ Կատարվում են բնության վերափոխման մեծ մասշտաբի աշխատանքներ, ավելի քան 800.000 հեկտար նախկին ճահճապատ հողերը չորացվում են և աստիճանաբար վերածվում կուլտուրական մշակույթների ծաղկուն դաշտերի։ Լեհաստանի աշխատավոր գյուղացիության դելեգացիաները բազմիցս այցելել են մեր երկիրը, սովորելով ժողովրդական տնտեսությունը զարգացնելու նրա առաջավոր փորձը, այն հաջողությամբ արմատավորում են իրենց երկրում։

Երկրում կառուցվում են երկաթուղային և ավտո-խճուղային նոր ուղիներ, է՛լ ավելի բանուկ և նավարկելի են դարձվում գետերը։ Ժողովրդական Լեհաստանը ապրում է իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ Ողջ երկրում տարածված է դպրոցների, ինչպես նաև միջնակարգ-մասնագիտական և բարձրագույն դպրոցների ցանցը, երկրում լիկվիդացված է անգրագիտությունը։ Բարձրագույն դպրոցներում սովորում են ավելի քան 120.000 հոգի։

Ժողովրդական Լեհաստանում անշեղորեն աճում է բնակչության կենսամակարդակը, նրա նյութական-կուլտուրական պահանջմունքների բավարարումը։ Ամբողջ երկրում



կատարվում է քաղաքների, բնակելի նոր վայրերի, կուլտուրական և առողջապահական ավանների ու հիմնարկների շինարարություն։ Պատերազմի թողած սոսկալի ավերածության հետքերը ավելի ու ավելի արագ լիկվիդացվում են։ Այդ տեսակետից ցայտուն օրինակ են մայրաքաղաք Վարշավան և նրա հոյակապ նորակառույցները։ Արդեն կառուցված է ավելի քան 25 քաղաքամաս, կոմունալ և հասարակական բազմաթիվ շինություններ, մետրոն և այլն։ Քաղաքի բնակչության քանակը մոտենում է մոտ մեկ միլիոն մարդու։ Մայրաքաղաք Վարշավայի արագ վերականգնումը կատարվում է լեհ ժողովրդի բարձր հայրենասիրության և աշխատանքային մեծ պաթոսի պայմաններում։ Նրա վերածնության և է՛լ ավելի գեղեցիկ ու հոյակապ մայրաքաղաք դարձնելու ժողովրդական շինարարության մեծ աշխատանքների մեջ բազմակողմանի և անմիջական մասնակցություն է ունենում Սովետական Միությունը։ Մայրաքաղաքի նորակառույցների մեջ վեհորեն կանգնած է Ի. Վ. Ստալինի անվան Կուլտուրայի և գիտության պալատի շքեղանիստ շենքը, որը որպես եղբայրության սիմվոլ, կառուցվել և լեհ ժողովրդին է նվիրաբերվել Սովետական Միության կողմից։

Աճում, ամրապնդվում և է՛լ ավելի ուժեղա-
նում է Ժողովրդական Լեհաստանը։ Նրա յու-
րաքանչյուր նոր նվաճումն ու հաղթանակը
մոտ է մեր սրտին և անկեղծորեն ուրախաց-
նում է մեզ։ Ժողովրդական Լեհաստանը այժմ
շրջապատված է բարեկամ երկրներով։ Նրա
արևելյան մասը հարևան է Սովետական
Միությանը։ Լեհ-սովետական եղբայրական
համագործակցությունը և մեծ բարեկամու-
թյունը ձեռք է բերվել արտաքին ագրեսիվ
ուժերի դեմ համատեղ պայքարում և ազա-
տությունն ու անկախությունը պաշտպանելու
համար մղվող պայքարում։

Իր այսօրվա երջանիկ կյանքի և վաղվա է՛լ
ավելի լուսաշող ապագայի համար կենսա-
խինդ ու լիահույս է լեհ մեծ ժողովուրդը, ո-
րովհետև նա առհավետ եղբայրությամբ ու
բարեկամությամբ կապված է իր մեծ ազա-
տարար հզոր Սովետական Միության հետ։

---

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԱՂԲՅՈՒՐՆ Է

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մեր երկրի զարգացումը շարունակ առաջ են տանում տեխնիկական պրոգրեսի ուղիով։

Սովետական տեխնիկական միտքը լուծել է այնպիսի խոշորագույն պրոբլեմներ, որոնք ունեն համաշխարհային նշանակություն։ Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ-ում աշխարհում առաջին անգամ ստեղծվել են սինթետիկ կաուչուկ, քարածխային կոմբայններ, բարձր ճնշման ուղղահոս կաթսա և շատ այլ բաներ։ Մեր երկրում հաջողությամբ լուծվում են այնպիսի վիթխարի խնդիրներ, ինչպիսիք են հիդրոէներգետիկ ռեսուրսների լայն օգտագործումը, խամ և խոպան հողերի յուրացումը, ատոմային էներգիայի օգտագործումը խաղաղ նպատակներով և այլն։

ՍՍՌՄ-ում արդյունաբերական արտադրանքի ամբողջ աճի մեծ մասը՝ մոտ 70 տոկոսը, ձեռք է բերվում աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ։

Աշխատանքի արտադրողականության աճ, այդ նշանակում է թողարկվող արտադրանքի ավելացում ժամանակի միավորի ընթացքում, արտադրանքի միավորի թողարկման համար ծախսվող աշխատաժամանակի տնտեսում։

Բանվորների աշխատանքի արտադրողականությունը կախված է ձեռնարկության տեխնիկական հագեցվածությունից, արտադրության տեխնոլոգիայից, կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակից և որակավորումից, արտադրության մեջ աշխատանքի կազմակերպումից և աշխատանքային կարգապահության վիճակից, սոցիալիստական մրցության թափից և առաջավոր փորձի արմատավորումից։

ՍՍՌՄ արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցությունից հետո ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պայքարելով ստանձնած բարձր պարտավորությունների կատարման համար, տեխնիկայի կատարելագործման, նոր տեխնիկայի արմատավորման և աշխատանքի արտադրողակա-



նության բարձրացման միջոցով ձեռք են բերել արտադրական նոր հաջողություններ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը համախառն արտադրանքի թողարկման առաջին կիսամյակի պլանը կատարեց 105,5 տոկոսով։ 1955 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 14,4 տոկոսով, այդ թվում միութենական ենթակայության ձեռնարկություններում՝ 17,5 տոկոսով։

Անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ 1955 թվականի առաջին կիսամյակում աշխատանքի արտադրողականությունն աճեց 8,6 տոկոսով, այդ թվում միութենական ենթակայության ձեռնարկություններում՝ 9,9 տոկոսով։

Ստանձնած պարտավորությունները գերակատարում են Ավտոդողերի, Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ գործարանները, Ալավերդու պղնձի և Կիրովականի Քիմիական կոմբինատները և այլ ձեռնարկություններ։ Ավտոդողերի գործարանը աշխատանքի արտադրողականության պլանը կատարեց 107,7 տոկոսով, ունեցավ հումքի, գոլորշու, էլեկտրաէներգիայի տնտեսում։

Այս տարվա յոթ ամսում Ավտոդողերի գործարանի աշխատողները պլանից դուրս արտադրել են մի քանի հազար կոմպլեկտ «Գիգանտ» ավտոդողեր, որոնց 50 տոկոսը պատրաստվել է տնտեսված հումքի հաշվին։

Տեխնոլոգիայի մակարդակի անընդհատ բարձրացումը՝ դետալների մեխանիկական մշակումից դրանց ճշգրիտ ձուլման կամ շտամպման անցնելը, էլեկտրաձուլման, էլեկտրատաքացման, բարձր հաճախականության հոսանքներով կոփման լայն արմատավորումը և էլեկտրատեխնիկական ու քիմիական այլ պրոցեսների կիրառումը, որոնք զգալիորեն կրճատում են աշխատանքի ծախսումը՝ հանդիսանում է աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացման կարևորագույն միջոցը։

Վերջին տարիներս զգալիորեն ավելացավ ռեսպուբլիկայի արդյունաբերության մոտորային էներգետիկ զինվածությունը։ Մի շարք ձեռնարկություններ տեղադրեցին նորագույն սարքավորում, յուրացրին առաջավոր տեխնոլոգիան։ Օրինակ՝ Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը ավտոմատացրեց բոլոր հիմնական արտադրական պրոցեսները, որի շնորհիվ կրկնապատկեց աշխատանքի արտադրողականությունը, իջեցրեց նյութերի և



էլեկտրաէներգիայի ծախսման նորմաները, բարձրացրեց արտադրանքի որակը։ «Պոլիվինիլացետատ» գործարանի աշխատողները գործադրում են իրենց ջանքերը տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու և ինտենսիվացնելու համար, համառ պայքար են մղում արտադրության հետագա տեխնիկական պրոգրեսի համար։ Նրանք արդեն կատարելագործել են արտադրանքի թողարկման տեխնոլոգիական սխեման, ստեղծել են ավելի կատարյալ և արտադրողական սարքավորում, որով փոխարինել են սակավ արդյունավետ ապարատները։ Այս բոլորի շնորհիվ գործարանը կիսամյակի պլանը կատարեց 5 ամսում, արտադրանքի ինքնարժեքն իջեցրեց 18 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը, անցյալ տարվա համեմատությամբ, բարձրացրեց 26 տոկոսով։ Կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել 1955 թվականի պլանը կատարելու նոյեմբերի 29-ին։

Կոմպրեսորների գործարանում ձուլման ցեխը մի շարք տարիներ համարվում էր արտադրության նեղ տեղը։ Կոմպրեսորի հիմնական դետալների և հանգույցների մեքենայական կաղապարման արմատավորումը հնարավորություն տվեց 55 կիլոգրամով կր-

ճատել ձուլվող դետալների կոմպլեկտի քաշը: Մեքենայացման է ենթարկված դետալների տեղափոխման աշխատանքը: Այս և մյուս միջոցառումները հնարավորություն տվեցին 6 տոկոսով ավելացնելու յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից ստացվող պիտանի ձուլվածքի քանակը: Այժմ գործարանը 4 անգամ շատ կոմպրեսորներ է արտադրում, քան 1950 թվականին: Գերազանցված է աշխատանքի արտադրողականության բարձրացման հնգամյա առաջադրանքը: Գործարանի առաջ խնդիր է դրված՝ ամեն կերպ բարձրացնել արտադրանքի որակը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումի որոշումներից հետո ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները մի շարք կոնկրետ միջոցառումներ են նշել ձեռնարկություններում առաջավոր տեխնիկայի հետագա արմատավորման, արտադրական պրոցեսների ավտոմատացման և հիմնական աշխատանքների մեքենայացման ուղղությամբ: Կիրովի անվան գործարանը նախատեսել է մոտ ժամանակներս մեքենայացնել աշխատանքը կրահանքերում, «Կանազ» գործարանը՝ մեքենայացնել հում-



քի մատուցման պրոցեսը, պատրաստել հոսանքի ուժի ավտոմատիկ կարգավորման սարքեր:

«Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել՝ քացախաթթվի արտադրության ապարեզում հասնել ծախսման գործակիցների հետագա իջեցման, արտադրության մեջ արմատավորել ավելի կատարելագործված կատալիզատորներ, մի շարք պարբերական պրոցեսներ վերածել անընդհատի:

Տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը կատարելագործելու բնագավառում մեծ դեր են խաղում բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական ակտիվության բարձրացումը, նորարարության և գյուտարարության լայն զարգացումը:

Հազարավոր ռացիոնալիզատորներ և գյուտարարներ ռեսպուբլիկայի ձեռնարկություններում աշխատում են արտադրության տեխնիկայի կատարելագործման վրա: Ռացիոնալացման և գյուտարարության դրական օրինակներ կան Կիրովի անվան, Ավտոդողերի, Հաստոցաշինական, Հայէլեկտրո, «Կանազ» գործարաններում և տեղական, թեթև ու սննդի արդյունաբերության մի շարք ձեռ-

նարկություններում։ 1954 թվականին Հայէլեկտրո գործարանում արմատավորվեց 121 ռացիոնալիզատորական առաջարկություն, որից ստացվում է ավելի քան մեկ միլիոն ռուբլու օգուտ, պահեստամասերի գործարանում արմատավորվեց 124 առաջարկություն, որից ստացվող տնտեսական օգուտը տարեկան կազմում է 600 հազար ռուբլի։

Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումի որոշումները և ՍՄԿՊ հերթական 20-րդ համագումար հրավիրելու վերաբերյալ հաղորդագրությունը ինչպես Սովետական Միության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի աշխատավորների մեջ առաջ են բերել աշխատանքային և քաղաքական ակտիվության նոր վերելք։ Գործարաններում, ֆաբրիկաներում և նորակառույցներում ի պատիվ պարտիայի առաջիկա համագումարի սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել 1955 թվականի պետական պլանը քանակական և որակական բոլոր ցուցանիշներով ժամկետից շուտ կատարելու համար։

---

### ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ՖԵՐՄԱՅՈՒՄ

Գ. ՀՈՒՆԱՆՅԱՆ

Ագիտացիոն-բացատրական աշխատանքի ուսանելի փորձ ունի Ստեփանավանի շրջանի Նորաշենի Ջափարիձեի անվան կոլտնտեսության անասնապահական ֆերմայի ագիտատոր Գ. Բաղդասարյանը։ Նա սիստեմատիկաբար կոլտնտեսականների համար հետաքրքիր և նպատակասլաց զրույցներ է կազմակերպում։ Կոլտնտեսականները միշտ գոհ են մնում իրենց ագիտատորից և խնդրում նրան, որ նա շուտ-շուտ հանդիպի իրենց։

Ագիտատոր Բաղդասարյանի հաջողությունը բացատրվում է նրանով, որ նա միշտ էլ խնամքով է նախապատրաստվում զրույցի, նախօրոք զրույցի համար ընտրում է անհրաժեշտ թվեր ու փաստեր, ցուցադրական նյութեր, տեղերից կոնկրետ օրինակներ։ Բացի այդ, նրա զրույցի թեմաները բազմազան են, ճիշտ պատասխան են տալիս այսօրվա հարցերին և մանավանդ օգնում են կոլտնտեսա-

կաններին յուրացնելու առաջավոր փորձը։ Օրինակ, վերջերս ագիտատոր Բաղդասարյանը անասնապահական ֆերմայում կթվորուհիների և անասնապահների համար զրույց ունեցավ «Ինչպես հասնել բարձր կաթնատվության» թեմայով։ Ագիտատորը իր զրույցի այդ թեման բաժանել էր երեք մասի։ Զրույցի առաջին մասում ագիտատորը շատ համառոտակի պատմեց, թե անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար կոլտնտեսային աշխատավորների առջև պարտիան ու կառավարությունն ի՞նչ խնդիրներ են դրել։ Իսկ այնուհետև ագիտատորը կոնկրետ և տեղական օրինակներով ունկնդիրներին պարզաբանեց, թե ինչ է արված հենց իրենց կոլտնտեսությունում անասնաբուծությունը զարգացնելու, նրա մթերատվությունը բարձրացնելու վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումները կենսագործելու ուղղությամբ։

— Անասնաբուծության զարգացման հիմքը,— ասաց ագիտատորը,— կերի կայուն բազան է, որն արդեն ստեղծվել և ամրապնդվում է մեր կոլտնտեսությունում։ Առանց առատ կերի, ավելորդ է խոսել անասնապահական մթերքների, հատկապես կաթնատվության բարձրացման մասին։ Այնուհետև ագի-



տատորը խոսեց կոլտնտեսությունում կերի կուտակման ընթացքի մասին։ Ունկնդիրներին նա տեղեկացրեց, թե յուրաքանչյուր կովի համար որքան կոշտ, հյութալի և խտացրած կեր է կուտակվել ու դեռ պետք է կուտակվի։ Կոլտնտեսությունում ինչ աշխատանք է կատարվել և դեռ ինչ պետք է անել հոտը կերով լի ու լի ապահովելու համար։

Ավարտելով զրույցի նաև այդ մասը, ագիտատոր Բաղդասարյանը ունկնդիրներին ծանոթացրեց անասնաբուծության մի շարք առաջավորների աշխատանքի փորձի հետ։

—Դուք գիտեք, որ մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ բարելավելով կովերի խնամքն ու կերակրումը, տարեցտարի ավելի շատ կաթ և կաթնամթերք են ստանում։ Օրինակ, Ղուկասյանի շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր ֆուրաժային կովից անցյալ տարի ավելի շատ կաթ ստացան, քան ստացել էին նախորդ տարվա ընթացքում, նրանք այս տարի արդեն շատ կաթ են ստացել, քան ստացել էին անցյալ տարի։ Ահա Բավրայի կոլտնտեսությունը։ Այս կոլտնտեսությունում օգոստոսի 1-ի տվյալներով յուրաքանչյուր կովից ստացվել է 2.200 կիլոգրամ կաթ։

Հետաքրքիր է իմանալ,— շարունակում է

ագիտատորը,— թե բավրացիները. ինչպես և ինչ միջոցներով են բարձրացրել կովերի կաթնատվությունը: Նրանք արոտավայրերի ճիշտ բաժանում են կատարել և հերթականությամբ արածացրել այն: Սկզբում նույն արոտավայրում արածացրել են կովերը, իսկ հետո՝ մոզիները: Ընդհանրապես կովերի և մատղաշների համար հատկացրել են ամենամոտ, հարթ և բարձր խոտածածկ ունեցող, ջրով ապահովված լավագույն արոտավայրերը: Բավրայի կոլտնտեսությունում լայնորեն կիրառվում է արոտների հերթափոխ արածացման սիստեմը: Դրա շնորհիվ անասունները միշտ ապահովված են լինում առատ խոտով և շատ կաթ են տալիս:

Այժմ,— շարունակում է ագիտատորն իր զրույցը,— խոսենք հենց մեր տնտեսության առաջավորների մասին: Ձեզանից չկա մեկը, որ չճանաչի մեր ֆերմայի կթվորուհի Արուսյակ Բաղդասարյանին: Նա այս տարվա անցած 7 ամսում յուրաքանչյուր կովից ստացել է 1.600 կգ. կաթ: Նրա խնամած «ռեկորդ» անունով կովը նույն ժամանակաշրջանում տվել է 2.735 կգ. կաթ: Ո՞րն է գաղտնիքը, ինչո՞ւ ընկեր Արուսյակը ավելի շատ կաթ է ստանում իր խնամած բոլոր կովերից: Շատ կաթ ստանալու գաղտնիքը բացատրվում է



նրանով, որ նա լավ է խնամում և լավ կերակրում անասուններին: Հետևելով առաջավոր կթվորուհի Արուսյակ Բաղդասարյանի օրինակին, բարելավելով կովերի խնամքը, կթվորուհիներ Մարիկ Մարտիրոսյանը, Նոյեմ Խաչատրյանը այս տարի իրենց խնամած կովերից 30—40 տոկոսով շատ ավելի կաթ են ստացել, քան անցյալ տարի:

Զրույցի վերջում ագիտատորը ունկնդիրներին բացատրեց իրենց առաջիկա անելիքները և պատասխանեց նրանց հարցերին:

Զրույցը տևեց ընդամենը 25—30 րոպե և կոլտնտեսականները գոհ սրտով բաժանվեցին իրենց ագիտատորից:

---

# ԾԱՆՐ ԻՆԴՈՒՍՏՐԻԱՆ—ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

(Թվեր և փաստեր)

*Գյուղատնտեսության մեջ չկա մի բնագավառ, որտեղ չօգտագործվի մետաղը։ Մեր երկրում տարեցտարի ավելանում է մետաղի սպառումը, դրա համար էլ ծանր արդյունաբերությունը տարեցտարի ավելի շատ չուգուն, պողպատ, գլանվածք է թողարկում։ Միայն այս տարի երկրում արտադրվելու է ավելի քան 33 միլիոն տոննա չուգուն և 45 միլիոն տոննա պողպատ։*

★ *Չուգունի և պողպատի արտադրանքը 1954 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 9 և 8 տոկոսով, նույն ժամանակաշրջանում գյուղատնտեսության կողմից չուգունի և պողպատի օգտագործումն ավելացել է 24 տոկոսով։*

★ *Ծանր արդյունաբերությունը գյուղատնտեսության համար ամեն օր թողարկում է հազարավոր տոննա չուգուն, տարբեր տեսակի պողպատ, երկաթ, խողովակներ, երկաթալարեր, մեխ և շատ իրեր։ Միայն անցյալ տարի գյուղատնտեսությունը ստացել է 3.400 վագոն մեխ։ Գյուղատնտեսության համար 1954 թվա-*



*կանին 111 հազար տոննա ավել սև մետաղի գլանվածք է արտադրվել, քան 1953 թվականին։ Այս տարվա առաջին կիսամյակում գյուղատնտեսությունը հարյուր հազարավոր տոննա շատ մետաղ և մետաղյա իրեր է ստացել, քան 1954 թվականի նույն ժամանակաշրջանում։*

★ *Մեր երկրի խոշոր մեքենաշինությունը հնարավորություն է ստեղծում սոցիալիստական գյուղատնտեսությանը տալու նորագույն տեխնիկա։ Անցած հնգամյակների տարիներին կառուցված Ստալինգրադի, Խարկովի, Չելյաբինսկի, Ալթայի, Լիպեցկու և մյուս տրակտորաշինական գործարանները ապահովում են ՄՏ կայանների և սովխոզների տրակտորների պարկի աճող պահանջները։*

★ *Եթե 1940 թվականի վերջին ՄՏ կայաններում և սովխոզներում կար 648 հազար տրակտոր (վերածած 15 ուժանոցի), ապա այժմ կա ավելի քան մեկ միլիոն 400 հազար տրակտոր։ Տրակտորային պարկը քանակապես աճեց հատկապես անցյալ տարի։ 1954 թվականին գյուղատնտեսությունն ստացել է 137 հազար ընդհանուր օգտագործման տրակտոր, 46 հազար ցանքամշակության տրակտոր։ Միայն անցյալ տարի խամ և խոպան հողերի շրջաններն է ուղարկվել 115 հազար տրակտոր (վերածված 15 ուժանոցի)։*

★ *Ավելի շատ է աճել տրակտորների արտադրությունը 1955 թվականի առաջին կիսամյակին։ Անցած 6 ամսվա ընթացքում ՄՏ կայանները և սովխոզները*

ստացել են ընդհանուր գործածության 79 հազար և ցանքամշակության 31,5 հազար տրակտոր։ ՄՏ կայանների 1955 թվականի առաջին կիսամյակի կատարած բոլոր աշխատանքները վերածած փափուկ վարի 27 միլիոն հեկտարով ավելի է, քան նախորդ տարվա նույն ժամանակաշրջանում։

★ ՄՏ կայանները և սովխոզները անընդհատ ստանում են նոր մարկայի տեխնիկա-տնտեսապես շահավետ կատարելագործված տրակտորներ, ինչպես, օրինակ, Ս—80—Բ 2, ԴՏ 24 և ԴՏ 14, ԽՏԶ 7 մ., ԿԴՊ 35—2 տրակտորները, որոնք լայն ցուցադրման են դրված Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի «Մեխանիզացիա և էլեկտրիֆիկացիա» պավիլիոնում։

★ Գյուղատնտեսության տեխնիկական՝ զինվածության արագ աճը հնարավորություն է տալիս տարեցտարի ավելի մեծ չափերով մեքենայացնել կոլտնտեսությունների և սովխոզների հիմնական աշխատանքները։ Անցյալ տարի կոլտնտեսություններում համարյա ամբողջ վարը կատարվեց տրակտորներով, աշնանացանի աշխատանքները մեքենայացվեցին 95, իսկ գարնանացանինը՝ 88 տոկոսով։ ՄՏ կայանները կոլտնտեսություններում 75 միլիոն հեկտարով շատ գյուղատնտեսական աշխատանք են կատարել, քան 1953 թվականին։

★ Միայն 1954 թվականին ՄՏԿ-ների և սովխոզների գյուղատնտեսական մեքենաների և գործիքների



պարկը ավելացել է 37 հազար հացահատիկային կոմբայնով, 15 հազար կարտոֆիլ հավաքող կոմբայնով, տեխնիկական կուլտուրաների բերք հավաքող 5 հազար կոմբայնով, 116 հազար բեռնատար ավտոմեքենայով, 100 հազար տրակտորային գութանով, 94 հազար տրակտորային կուլտիվատորներով, մոտ 200 հազար ինքնագնաց և տրակտորային խոտհնձիչ մեքենաներով և բազմաթիվ այլ մեքենաներով ու գործիքներով։

★ Այս տարվա վեց ամսվա ընթացքում արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվել է 58 հազար բեռնատար ավտոմեքենա, 21 հազար հացահատիկային կոմբայն, 9 հազար կարտոֆիլ հավաքող կոմբայն, 3 հազար հատ շաքարի ճակնդեղ հավաքող կոմբայն, 48 հազար տրակտորային գութան, 59 հազար տրակտորային շարքացան, 12 հազար տրակտորային գութան, 59 հազար տրակտորային շարքացան, 12 հազար կարտոֆիլ տնկող մեքենա, 48 հազար տրակտորային կուլտիվատոր։

☆ ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը քիմիական արդյունաբերության աշխատողներից պահանջեց ավելացնել պարարտանյութերի արտադրությունը այն հաշվով, որ գյուղատնտեսությունը 1959 թվականին ստանա (վերածած պայմանական միավորի) 16,5—17,5 միլիոն տոննա, իսկ 1964 թվականին՝ 28—30 միլիոն տոննա պարարտանյութ։ Կոլտնտեսությունները 1955 թվականին 70 տոկոսով ավելի պարար-

տանյութ են ստանալու, քան ստացել են 1950 թվականին: Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, ընթացիկ տարվա 6 ամսում, քիմիական պարարտանյութերի արտադրությունը կազմում է 121 տոկոս, իսկ թունաքիմիկատներինը՝ 158 տոկոս:

☆ Գյուղատնտեսական բազմազան տեխնիկայի կապիտալ վերանորոգման համար ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունը իր տրամադրության տակ ունի 500 ձեռնարկություն և միջշրջանային արհեստանոց, որոնց տեխնիկական հագեցվածությունը տարեցտարի աճում է: Գյուղատնտեսության մինիստրության վերանորոգման ձեռնարկությունները և ՄՏ կայանների արհեստանոցները միայն 1954 թվականին ստացել են 12 հազար 850 մետաղահատ տարբեր հաստոցներ և 3.700 դարբնոց-մամլող սարքավորումներ: Ընթացիկ տարվա առաջին կիսամյակին վերանորոգման ձեռնարկություններն ու արհեստանոցները ստացել են 6.122 մետաղահատ հաստոց և 1.167 մամլող ու այլ սարքավորում:

★ ՍՍՌՄ գյուղատնտեսության և սովխոզների մինիստրությունների ձեռնարկությունները ընթացիկ տարվա առաջին կիսամյակին ստացել են 2.500 անուն պահեստամասեր, որի արժեքը կազմում է 852,5 միլիոն ռուբլի: Ընթացիկ տարվա 6 ամսում կոլտնտեսությունները, ՄՏ կայանները և սովխոզները ստացել են 522,6 միլիոն ռուբլու պահեստամասեր: Միայն «Մոս-



ելմաշ»-ը բաց է թողել 75 միլիոն ռուբլու պահեստամասեր:

☆ ՍՍՌՄ Շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները ընթացիկ տարվա 6 ամսում միայն խամ և խոպան հողերի շրջանները, այն է՝ Ղազախստան, Ալթայի երկրամաս և Արևմտյան Սիբիր են ուղարկել մոտ 300 հազար տոննա ցեմենտ, 700 հազար քառակուսի մետր լուսամուտի ապակի, 50 միլիոն հատ շիֆեր, 10 միլիոն քառակուսի մետր ծածկանյութ:

★ Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի սպառկոոպերացիայի միջոցով գյուղական բնակչությանը և կոլտնտեսություններին լրացուցիչ վաճառվելու է տասնյակ հազարավոր տոննա ցեմենտ, 2 անգամ ավել անտառանյութ, ավելի քան 250 հազար քառակուսի մետր ստանդարտ տներ, 40 տոկոսով ավել սղոցած անտառանյութ և ուրիշ շատ շինարարական իրեր ու գործիքներ:

---

# ԿԱՆԱԴԱ

Կանադան գտնվում է Հյուսիսային Ամերիկայում։ Հարավում նա սահմանակից է Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Արևմուտքից, արևելքից և հյուսիսից նրա սահմանները ողողում են Խաղաղ, Ատլանտյան և Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսները։ Հյուսիս արևմուտքից Կանադային սահմանակից է Ալյասկա թերակղզին։

Կանադայի տարածությունն է՝ 9.991 հազար քառակուսի կիլոմետր։ Երկրի արևմտյան մասում ընկած է Կորդիլերի լեռնային շրջանը։ Արևելյան մեծ մասը հարթավայր է, որտեղ կան շատ լճեր և գետեր։ Կանադայի հյուսիսային մասը գտնվում է արկտիկական գոտում։ Հարավում կան անտառային մեծ տարածություններ և սևահող տափաստաններ, որտեղ ցանվում է ցորեն։

Կանադայի բնակչության թիվն է՝ 15.236 հազար մարդ։ Բնիկները՝ հնդիկները և էսքիմոսները աննշան փոքրամասնություն են կազմում։ Օրինակ՝ 1941 թվականին հնդիկների թիվն էր՝ 118 հազար, էսքիմոսներինը՝ 7,2 հազար մարդ։ Նրանք ապրում են հարմարություններից զուրկ, հեռավոր շրջաններում, անխնա շահագործվում են և ենթարկվում ռասայական խտրականության։



Բնակչության ճնշող մեծամասնությունը կանադացիներ են, Եվրոպայից, գլխավորապես Անգլիայից, Իռլանդիայից, Ֆրանսիայից ներգաղթածների հետնորդները։ Բնակչության 5 տոկոսը կազմում են սլավոնական ծագում ունեցողները, որոնց համարյա թե կեսը ուկրաինացիներ են։

Կանադայի բնակչության կեսից ավելին ապրում են քաղաքներում։ Առավել խոշոր քաղաքներն են՝ Մոնռեալը (1.003 հազար բնակիչ), Վանկու-վերը (858 հազար), Տորոնտոն (673 հազար)։ Կանադայի մայրաքաղաքն է Օտտավան։

Կանադան, որպես Մեծ Բրիտանիայի դոմինիոն, մտնում է Բրիտանական կայսրության մեջ։ Կանադայում պետության ղեկավարն է անգլիական թագավորը։ Անգլիական թագավորի փոխարքան Կանադայում գեներալ-նահանգապետն է, որին նշանակում է Լոնդոնը։ Կանադայի օրենսդրական օրգանն է պառլամենտը, որը կազմված է սենատից և համայնքների պալատից։

Կանադայում կան մի քանի քաղաքական պարտիաներ։ Լիբերալ պարտիան, որը իշխանության գլուխ է կանգնած, ներկայացնում է կանադական խոշոր բուրժուազիայի շահերը։ Պարտիայի լիդեր Սեն-Լորանը Կանադայի ներկայիս կառավարության ղեկավարն է։ Բուրժուական մյուս ազդեցիկ պարտիան պրոգրեսիվ-պահպանողական պարտիան է։

1943 թվականի օգոստոսին ստեղծվեց բանվորական պրոգրեսիվ պարտիան։ Այն հանդիսացավ 1940 թվականին Կանադայում արգելված կոմունիստական պարտիայի հաջորդը։ Բանվորական պրոգրեսիվ պարտիան պաշտպանում է աշխատավորների կենսական իրավունքները։ Նա գլխավորում է ժողովրդական մասսաների պայքարը խաղաղության համար, ընդդեմ օտարերկրյա մոնոպոլիաների ուժեղացող բռնության և նոր պատերազմի պատրաստմանը Կանադայի մասնակցության։ Պարտիայի ղեկավարն է Տիմ Բակը։

Կանադան կապիտալիստական ինդուստրիալ-ագրարային երկիր է։ Բրիտանական կայսրության մեջ մտնող երկրներից Կանադան արդյունաբերական տեսակետից ավելի զարգացածն է։ Մինչև համաշխարհային ա-



ռաջին պատերազմը Կանադայում տնտեսական տիրապետող դիրք էին գրավում անգլիական արդյունաբերողները։ Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո ամերիկյան կապիտալը շատ ուժեղ կերպով արտամղեց անգլիական բուրժուազիային։ 1953 թվականին Կանադայում ամերիկյան կապիտալ ներդրումները կազմում էին 8,6 միլիարդ դոլար, մինչդեռ անգլիական կապիտալ ներդրումները կազմում էին ընդամենը 1,8 միլիարդ դոլար։

Ներկայումս ԱՄՆ-ի արտասահմանյան բոլոր մասնավոր կապիտալ ներդրումների մեջ մոտ մեկ երրորդը և ամերիկյան արտաքին ամբողջ առևտրի համարյա թե մեկ քառորդը բաժին է ընկնում Կանադային։ Կանադայում իրենց կրկնակ ձեռնարկություններն ունեն Միացյալ Նահանգների ավտոմոբիլային խոշորագույն կորպորացիաները՝ «Ֆորդը», «Ջեներալ մոտորսը», «Կրեյսլերը»։

Վերջին տարիներս Կանադայում ուժգին թափով զարգանում է ռազմական արդյունաբերությունը, որի մեջ նույնպես վճռական դեր են խաղում ամերիկյան մոնոպոլիստները։

Կանադայի ընդերքը հարուստ է գունավոր և հազվագյուտ մետաղներով։ Կապիտալիս-

տական երկրներից Կանադային է պատկանում առաջին տեղը նիկելի, պլատինի ու ասբեստի հանույթի և երկրորդ տեղը՝ ոսկու հանույթի, ցինկի, ալյումինի և այլ նյութերի արտադրության ասպարեզում։ Կանադայում հայտնաբերվել են նավթի մեծ պաշարներ, որոնք ներկայումս ուժեղ կերպով մշակվում են ամենից առաջ ամերիկյան նավթային մոնոպոլիաների կողմից։ Ամերիկյան գործարքատերերը Կանադայում զբաղվում են նաև երկաթահանքի, նիկելի, ասբեստի, պղնձի հանույթով։ Հետպատերազմյան տարիներին մեծ զարգացում ստացավ ուրանի հանքանյութի արդյունահանությունը։ Ուրանի հիմնական հանքերը գտնվում են բևեռային շրջանում, Պորտ-Ռադի քաղաքի մոտ, որն ընկած է Մեծ Արջ լճի արևելյան ափին։

Ամերիկյան մոնոպոլիաների շահերի համար լեռնահանքային արդյունաբերության չափից դուրս զարգացումը գնալով ավելի ու ավելի միակողմանի է դարձնում կանադական էկոնոմիկան։ Կանադայում զարգանում են արդյունաբերության հենց այն ճյուղերը, որոնցով շահագրգռված են Ամերիկայի Միացյալ Նահանգները։



Այդ հանգամանքը անկման հասցրեց արդյունաբերության մի շարք ճյուղեր։ Այդ բանի օրինակ է հանդիսանում տեքստիլ արդյունաբերությունը։1954 թվականին Կանադայում մի քանի տեքստիլ ֆաբրիկաներ փակվեցին, իսկ մնացածներից շատերը անցան երեքօրյա աշխատանքային շաբաթի։ Դրա պատճառն այն է, որ ամերիկացիները իրենց երկրում տիրող ճգնաժամի կապակցությամբ Կանադա են արտահանել հսկայական քանակությամբ տեքստիլ ապրանքներ։

Կանադայի գյուղատնտեսության մեջ հիմնականը ցորենի արտադրությունն է։ Ցորենի ավելի քան 90 տոկոսն արտադրվում է երկրի կենտրոնում, պրերիաներում (սևահող տափաստաններում)։ Կանադական արտահանության մեջ կարևորագույն տեղ է գրավում ցորենը։

Օգտագործելի հողային տարածության համարյա երկու երրորդական մասը գտնվում է խոշոր ֆերմերների ձեռքում, որոնք տնտեսությունը վարում են կապիտալիստական եղանակով, օգտագործելով մեքենաներ և վարձու բանվորներ։ Ֆերմերների մեծամասնությունը տնտեսական կախում ունի բանկերից։ Հյուսիսում զարգացած է մուշտակա-

գործունեությունը։ Խաղաղ օվկիանոսի ափերին բնակչությունը հիմնականում զբաղվում է ձկնորսությամբ։

Կանադայի արտաքին առևտուրը հսկայական դեր է խաղում։ Երկրի ազգային եկամտի մեկ երրորդը ստացվում է արտաքին առևտրից։ Կանադայի տեսակարար կշիռը համաշխարհային շուկայում նշանակալի է։ Կանադային բաժին է ընկնում ալյումինի և լրագրական թղթի համաշխարհային արտահանության 4/5-ը, նիկելի արտահանության 3/4-ը, ցորենի արտահանության 1/4-ը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ ԱՄՐԱՊՆԴԵԼՈՒ ՀԱՄԱՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների ժնևի խորհրդակցության արդյունքների մասին *ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 7-ի համարում։*

*Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ*— Հայտարարություն Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 22-ի համարում։*

*Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ*— Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների ժնևի խորհրդակցության արդյունքները, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում 1955 թ. օգոստոսի 4-ին, տպագր-*

*ված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 14-ի համարում։*

Միջազգային լարվածության հետագա թուլացման շահերի օգտին, *«Պրավդա»-ի օգոստոսի 14-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 16-ի համարում։*

Ժողովուրդները լի են խաղաղությունն ամրապնդելու վճռականությամբ, *«Պրավդա»-ի օգոստոսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի 19-ի համարում։*

## 2. ՊԱՐՏԻԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ հերթական 20-րդ համագումարը հրավիրելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 14-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրություն, *Հայպետհրատ, 1952, էջ 19—27։*

Հաշվետվություններն ու ընտրությունները սկզբնական պարտկազմակերպություններում, *«Պրավդա»-ի օգոստոսի 26-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի 27-ի համարում։*

Ավելի լայնորեն ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, *«Պրավդա»-ի օգոստոսի 30-ի*



*առաջանորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 31-ի համարում։*

## 3. 1905—1907 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռևոլյուցիան Ռուսաստանում, Ռևոլյուցիայի սկիզբը Ռուսաստանում, Ռևոլյուցիոն օրեր, Առաջին դասերը, *Երկեր հատոր 8, էջ 71—72, 105—109, 111—139, 160—166, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ, *Երկեր, հատոր 9, էջ 1—167, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր խնդիրները և բանվորների դեպուտատների Սովետը, Մահացող ինքնակալությունը և ժողովրդական իշխանության նոր օրգանները, *Երկեր, հատոր 10, էջ 3—17, 68—74, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մոսկվայի Ապստամբության դասերը, *Երկեր, Հատոր 11, էջ 199—209, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռևոլյուցիան և կոնտրռևոլյուցիան, *Երկեր, Հատոր 13, էջ 132—141, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռուսական Ռևոլյուցիայի գնահատականի առթիվ, սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը ռուսական ռևոլյուցիայում, պրոլետարիատի պայքարի նպատակը մեր ռևոլյուցիայի մեջ, *Երկեր, Հատոր 15, էջ 445—470, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռևոլյուցիայի դասերը, Ցույցերի

սկիզբը, *Երկեր, Հատ. 16, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրեսնյայի բանվորների սխրագործությունը, *Երկեր, Հատոր 28, էջ 506—525, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ 1905 թվականի դեկտեմբերյան ապստամբության տարեդարձին նվիրված միտինգում, *Երկեր, Հատոր 30, էջ 346—353, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Նամակ Կրասնայա Պրեսնյայի բանվորներին 25 դեկտեմբերի 1920 թ., *Երկեր, Հատ. 31, էջ 676—677, Հայպետհրատ, 1952։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Բոլոր բանվորներին, Թիֆլիս, 20-ին նոյեմբերի 1905 թ., Երկու գոտեմարտ, Արդի մոմենտը և Բանվորական պարտիայի միավորիչ համագումարը, Երկեր, *Հատոր 1, էջ 214—222, 282—311, Հայպետհրատ, 1946։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին: (1903—1953):

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի պատմություն, Համառոտ դասընթաց, *գլուխ 3-րդ։*

Ռուսական առաջին ռևոլյուցիայի հիսուն տարին *(ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ինստիտուտի թեզիսները, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953։*

ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, *մաս առաջին, էջ 81—225, Հայպետհրատ, 1954։*



## 4. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԿԵՐՊՈՎ ԴԻՄԱՎՈՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ հերթական 20-րդ համագումարը հրավիրելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 14-ի համարում։*

Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարը, *«Պրավդա»-ի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 19-ի համարում։*

Արտադրական նվաճումներով դիմավորենք պարտիայի 20-րդ համագումարը, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 27-ի առաջնորդողը։*

Ի պատիվ ՍՄԿՊ 20-րդ համագումարի, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 25-ի առաջնորդողը։*

Պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը: *«Ագիտատորի բլոկնոտ» № 16, 1955։*

## 5. ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՍԻՍՏԵՄԱՏԻԿԱԲԱՐ ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐՈԳՐԵՍԻՎ ՄԵԹՈԴՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկա-

կան պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ. Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, մաս երկրորդ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 14-ի համարում։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, *զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում, 1955 թվականի հուլիսի 4-ին, մաս երկրորդ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 17-ի համարում։*

Հայաստանի ԿԿ Կենտկոմի պլենումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 25-ի համարում։*

## Ց. ՀԱՑԱՀԱՏԻԿԻ, ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ, ԽԱՂՈՂԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՅՈՒՍ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԸ ՀԱՎԱՔԵՆՔ ԺԱՄԱՆԱԿԻՆ ՈՒ ԱՌԱՆՑ ԿՈՐՍՏԻ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը գարնանացանի արդյունքների, ցանքերի խնամքի, բերքահավաքի անցկացման և գյուղատնտեսական մթերք-



ների մթերումների 1955 թվականի պլանի կատարումն ապահովելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 15-ի համարում։*

Ամեն կերպ արագացնել բերքահավաքի տեմպը, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 16-ի առաջնորդողը։*

Վճռական թափ հաղորդել հացամթերումներին, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 28-ի առաջնորդողը։*

Բարձր կազմակերպվածությամբ անցկացնել բերքահավաքն ու հացամթերումները, *«Պարտիական կյանք» ամսագրի 1955 թվականի № 8-ի առաջնորդողը։*

---

# ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ԳՈԱ — Գոան հնամենի հնդկական տերիտորիա է, որը սկսած 16-րդ դարից մինչև այժմ փորթուգալական գաղութ է։ Այդ փոքրիկ տերիտորիան գտնվում է Անչիդիվա թերակղզու (Հնդկաստան) հարավ-արևմտյան ափերին։ Գոան ցամաքից սահմանակից է հնդկական ռեսպուբլիկայի Բոմբեյ նահանգին։ Նրա տերիտորիան 3.370 քառ. կիլոմետր է, բնակչությունը՝ ավելի քան կես միլիոն մարդ։ Վարչական կենտրոնն է Նովա-Գոան, կամ Փանջիմը։ Գոայի գլխավոր նավահանգիստ Մորմուհանը կապված է Հնդկաստանի երկաթուղային ցանցի հետ։ Մորմուհանով է կատարվում մարգանեցի հանքանյութի և բամբակի հումքի արտահանությունը Հնդկաստանից։

1510 թվականին փորթուգալական գաղութարարները Հնդկաստանից զավթեցին Գոան և այն դարձրին իրենց գաղութ։ Գոա քաղաքը դարձավ նրանց տիրապետությունների կենտրոնը Հնդկաստանում։ 16-րդ դարի քառասնական թվականներին Հնդկաստան ներթափանցեցին ճիզվիտները (կաթոլիկների հոգևոր կազմակերպություն, որ ծառայում էր Հռոմի պապականությանը և ֆեոդալական ավագանուն)։ Նրանք Գոան դարձրին Արևելքում իրենց հետագա գաղութարարական գործունեության կենտրոնը։



Փորթուգալական գաղութարար պարագլուխները և ճիզվիտները անխնա շահագործում էին տեղի բնակչությանը։ Իրենց նպատակին հասնելու համար գաղութարարները չէին խորշում և ոչ մի բանից։ Նրանք զբաղվում էին խաբեբայությամբ, երեսպաշտությամբ, լրտեսությամբ, սպանություններով, նողկալի դատաստաններով իրենց համար անցանկալի մարդկանց նկատմամբ։

Դարավոր ճնշման և դաժան շահագործման հետևանքով Գոան մնաց որպես տնտեսապես հետամնաց երկիր։ Բնակչության հիմնական զբաղմունքը գյուղատնտեսությունն է։ Մշակվում է մեծ մասամբ բրինձ։ Լավագույն հողերն իրենց ձեռքն են գցել փորթուգալական գաղութարարները, որոնց էլ հենց պատկանում են կոկոսի, պղպեղաբույսի և մյուս կուլտուրաների հսկայական պլանտացիաները։

Գոայում փոքր չափով մշակվում են մարգանեցի հանքեր։ Կազմակերպված է ծովային աղի հանույթ։ Առափնյա շրջաններում բնակչությունն զբաղվում է ձկնորսությամբ։ Գրեթե չկա մշակող արդյունաբերություն։ Փորթուգալցիները Գոայից արտահանում են մարգանեցի հանքաքար, մրգեր, կոկոսաընկույզ և այլն։

Փորթուգալական օկուպանտների կողմից պարտադրված գաղութային ռեժիմը Գոայի բնակչությանը հասցրել է իրավազուրկ վարձակալների կամ բատրակների դրության։

Փորթուգալցիների գաղութային տիրապետության

ամբողջ ժամանակաշրջանում Գոայի բնակչությունը բազմիցս ապստամբել է օտարերկրյա կեղեքիչների դեմ։ Ամենախոշոր ապստամբություններից մեկը 1871 թվականի ապստամբությունն էր, որը մեծ դաժանությամբ ճնշվեց փորթուգալական գաղութարարների կողմից։

Սակայն փորթուգալական գաղութարարների կողմից գործադրվող ամեն տեսակ ռեպրեսիաներն ու բռնությունները դարերի ընթացքում չկարողացան ընկճել Գոայի բնակչության ազատասիրական կամքը, իրենց երկրի լիակատար ազատագրության հասնելու վառ ձգտումը։ Վերջին ժամանակներս առանձնահատուկ ուժով է ծավալվել գոացիների ազգային ազատագրական շարժումը փորթուգալական գաղութարարության դեմ։ Գոացիների շարժումը սերտորեն կապված է հնդկական ժողովրդի կյանքում վերջին տարիներս տեղի ունեցած պատմական փոփոխությունների հետ։ Ինչպես հայտնի է, հնդիկ ժողովուրդը 1946 թվականին իր վրայից թոթափեց գաղութային լուծը և երկիրը հռչակեց ռեսպուբլիկա։

Ազատագրական շարժման կողմնակիցները պահանջում են փորթուգալական իշխանություններից, որ նրանք հրաժարվեն գաղութային քաղաքականությունից և Գոայի տերիտորիան վերամիացվի Հնդկաստանի ռեսպուբլիկային։

Ներկայումս ամենուրեք տարերայնորեն ստեղծվում են Գոայի ազատագրության համար պայքարող կամա-



վորների ջոկատներ։ Նրանք իրենց անվանում են խաղաղ դիմադրության շարժման մասնակիցներ։ Չնայած այն բանին, որ Գոայի բնակչությունը պահանջում է իր օրինական իրավունքները բավարարել խաղաղ ճանապարհով, փորթուգալական իշխանությունները շարունակում են դատաստան տեսնել խաղաղ դիմադրության շարժման մասնակիցների նկատմամբ։ Հնդկաստանի հասարակայնությունը իր լիակատար համերաշխությունն է հայտնում գոացիների օրինական պահանջների հանդեպ և բողոքում այն բռնությունների դեմ, որ փորթուգալական իշխանությունները գործադրում են կամավորների նկատմամբ։ Հնդկաստանի խոշոր քաղաքներում՝ Կալկութայում, Սիրինահարում, Դեհրա-Դունեում և այլն շարունակվում են տեղի ունենալ բողոքի միտինգներ։

Գոայի բնակչությունը խորապես համոզված է և հավատացած, որ չնայած փորթուգալական իշխանությունների կողմից հարուցվող խոչընդոտներին, իր օրինական պահանջները կկատարվեն, որովհետև Գոայի բնակչության ձգտումները վառ պաշտպանություն են գտնում աշխարհի ամբողջ պրոգրեսիվ մարդկության կողմից։

ԱՆՍԱՄԲԼ — Ֆրանսերեն բառ է, ունի միասին, մեկտեղ կամ միատեղ լինելու նշանակություն։ Կյանքում հայտնի են բազմաթիվ անսամբլեաներ, ինչպես, օրինակ, երաժշտական անսամբլ, երբ մի քանի երաժիշտ-

ներ միասին կամ համատեղ երգում կամ նվագում են, կամ մի խումբ արտիստներ հանդես են գալիս միասին, իբրև մեկ գեղարվեստական կոլեկտիվ, օրինակ, ժողովրդական պարերի անսամբլը, երգի և պարի անսամբլը և այլն։ Անսամբլ բառը լայնորեն գործածվում է նաև ճարտարապետության մեջ։

Անսամբլ բառը շատ է գործածվում քաղաքական կյանքում։ Օրինակ, հենց վերջերս Հելսինկիում տեղի ունեցավ Խաղաղության Համաշխարհային Անսամբլեան, որ փաստորեն միջազգային ներկայացուցչական ժողով էր՝ նվիրված խաղաղության և անվտանգության պաշտպանության պրոբլեմներին։ Այդ անսամբլեային մասնակցում էին բանվորներ, գյուղացիներ, առևտրական և արդյունաբերական շրջանների ներկայացուցիչներ, եկեղեցու գործիչներ, պառլամենտների դեպուտատներ, ականավոր գիտնականներ, գրողներ, արտիստներ։

Խաղաղության Համաշխարհային Անսամբլեայի մասնակիցները նշեցին այն հիմնական ուղիները, որոնցով պետք է ծավալվի խաղաղասեր ուժերի հետագա պայքարը միջազգային լարվածությունը թուլացնելու, բոլոր ժողովուրդների անվտանգությունն ապահովելու համար, կայուն և տևական խաղաղության համար։

ԱՆՇԼՅՈՒՍ— Այս տերմինը գործածության մեջ է մտել 1918 թվականից, երբ քայքայվեց Ավստրո-Հունգարական միապետությունը։ Այդ ժամանակ գերմանական իմպերիալիստները պահանջեցին Ավստրիան միացնել Գերմանիային, անշլյուսի ենթարկել, հափշտա-



կել այն։ Ավստրիան հափշտակելու իմպերիալիստական Գերմանիայի հենց այդ քաղաքականությունն էլ կոչվում է Անշլյուս։ 1938 թվականին հիտլերյան Գերմանիան Անշլյուսի ենթարկեց Ավստրիան, բռնի կերպով նրա տերիտորիան միացրեց իրեն։

Այդ ժամանակ միայն Սովետական Միությունը բողոքեց հիտլերյան Գերմանիայի դեմ և պահանջեց կոլեկտիվ միջոցառումներ ագրեսորին հակահարված տալու համար։

Սովետական Միությունը պաշտպանել և պաշտպանում է Ավստրիայի անկախությունն ու տերիտորիալ ամբողջականությունը։ Ջախջախելով հիտլերյան զորքերին, Սովետական Բանակը 1945 թվականի ապրիլին ազատագրեց Ավստրիան, լիկվիդացրեց Անշլյուսի իմպերիալիստական քաղաքականությունը և վերականգնեց Ավստրիական ռեսպուբլիկայի անկախությունը։

Այս տարվա մայիսի 15-ին Սովետական Միության, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Անգլիայի, Ֆրանսիայի և Ավստրիայի ներկայացուցիչների կողմից տեղի ունեցավ Ավստրիայի հետ պետական պայմանագրի ստորագրումը, որով Ավստրիան վերականգնվեց որպես անկախ ու դեմոկրատական պետություն։

Ավստրիայի հետ պետական պայմանագրի ստորագրումը միջազգային կարևորագույն իրադարձություն է։ Այն ցույց տվեց, որ միջազգային հարցերը կարելի է լուծել բանակցությունների միջոցով, որ կան այդ հարցերի լուծման այնպիսի ճանապարհներ, որոնք արտա-

հայտում են ժողովուրդների շահերն ու ձգտումները, անկախ նրանից, թե հասարակական ինչ կարգ ունեն նրանց պետությունները։

Այսպիսով, Սովետական Միության ամենաակտիվ մասնակցությամբ լիկվիդացվեց Անշլյուսի վտանգը Ավստրիայի նկատմամբ և Եվրոպայի կենտրոնում ստեղծվեց չեզոք Ավստրիա, որը չի մասնակցի որևէ ռազմական բլոկի և իր տերիտորիայում թույլ չի տա օտարերկրյա բազաների գոյություն։

ԱՊԱՍՏԱՆԻ ԻՐԱՎՈՒՆՔ — Մեր երկրում ապաստանի իրավունքով օգտվում են արտասահմանից փախած այն քաղաքացիները, որոնք իրենց երկրներում հետապնդման են ենթարկվել աշխատավորների շահերը պաշտպանելու, գիտական գործունեության կամ ազգային-ազատագրական պայքարին մասնակցելու համար։ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 129-րդ հոդվածի հիման վրա նման անձինք մեզ մոտ մշտական կամ ժամանակավոր բնակության համար ապաստան են ստանում։

Ապաստանի իրավունքով Սովետական Միությունը փրկում է մարդկային կուլտուրայի և պրոգրեսի լավագույն ներկայացուցիչների կյանքը։

Ապաստանի իրավունք գոյություն ունի նաև Ժողովրդական Դեմոկրատիայի երկրներում։

---

## СОДЕРЖАНИЕ





# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ— «Գիքորը»: Գինը 1 ռ. 50 կ., 32 էջ, տիրաժ 3.000:*

*Ա. ԿՈԺԻՆ— «Ճապոնիան այսօր»: Գինը 4 ռ. 75 կ., 236 էջ, տիրաժ 3.000:*

*Ա. ԱՐՇԱՐՈՒՆԻ— «Մոսկվայի համալսարանը և հայ առաջավոր ինտելիգենցիան»: Գինը 4 ռ. 30 կ., 240 էջ, տիրաժ 5.000:*

*ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ— Երկերի ժողովածու: Հատոր առաջին: Գինը 15 ռ. 80 կ., 474 էջ, տիրաժ 5.000:*

*Մ. Ս. ՍԱՐԳՍՅԱՆ— «Մարտիրոս Սարյան»: Գինը 4 ռ. 40 կ., 78 էջ, տիրաժ 3.000:*

---

**Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 17** **1955 г.**

*ՎՖ 12719* *Պատվեր 751* *Տիրաժ 8800*

---

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.:*